Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 8 ԱՊՐԻԼ 1950

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտ-կոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հե-ռախոս՝ 2—52—78։*

# ՄԱՅԻՍԻ 1-Ը ԱՇԽԱՏԱՎՈՐ-ՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆՆ Է

*Մայիսի 1-ը ամբողջ աշխարհի աշխատա-վոր մարդկության միջազգային տրադիցիոն տոնի օրն է, բանվոր դասակարգի ինտեր-նացիոնալ համերաշխության և մարտական ուժերի ստուգատեսի օրը։ Ամեն տարի այդ օրը բանվոր դասակարգը, միջազգային պրո-լետարիատը, աշխատավոր մասսաները, ողջ պրոգրեսիվ մարդկությունը նորից ու նորից են ցուցաբերում իրենց համերաշխությունը և պատրաստակամությունը պայքարելու հա-նուն կայուն և երկարատև խաղաղության, դե-մոկրատիայի և սոցիալիզմի, ընդդեմ պատե-րազմի հրձիգների։ Աշխատավորների միջազ-գային տոնը՝ Մայիսի 1-ը այս տարի Սովե-տական Միության և ժողովրդական դեմո-կրատիայի երկրների աշխատավորները տո-նում են խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ճագերի անշեղ աճման, իմպե-րիալիստական ճագերի անընդհատ թուլաց-*

ման պայմաններում։ Խաղաղության, դեմո-
կրատիայի և սոցիալիզմի լագերի ամրա-
պնդման գործում վճռական դեր է խա-
ղում դեմոկրատական լագերի գլխավոր ու-
ժի՝ Սովետական Միության անշեղ ուժե-
ղացումն ու հզորությունը։ Սովետական
Միության քաղաքական, տնտեսական, կուլ-
տուրական վերելքի արտահայտության փայ-
լուն ցուցանիշներից մեկը՝ սովետական
ժողովրդի բարոյա-քաղաքական հզոր միաս-
նությունն է, որն իր ուժը նորից դըր-
սևորեց 1950 թվի մարտի 12-ին, ՍՍՌՄ
Գերագույն Սովետի ընտրություններում։ Մեր
երկրի բարձրագույն օրգանի՝ Գերագույն
Սովետի ընտրությունների օրը դարձավ հա-
մաժողովրդական տոնի օր, սովետական դե-
մոկրատիայի տրիումֆի օր։

ՍՍՌՄ-ի տնտեսական վերելքը արտա-
հայտվում է սոցիալիստական արդյունաբե-
րության և գյուղատնտեսության հաջողու-
թյուններով։ ՍՍՌՄ-ի ժողովուրդները այս
տարի մայիսմեկյան տոնը դիմավորում են
հետպատերազմյան նոր հնգամյա պլանը
կենսագործելու ասպարեզում ձեռք բերած
աննախընթաց նվաճումներով։ Լենինի-
Ստալինի մեծագործ պարտիայի ղեկավա-



րությամբ, ընկեր Ստալինի հանճարեղ ա-
ռաջնորդությամբ ՍՍՌՄ-ի ժողովրդական
տնտեսության վերականգնման ու զարգաց-
ման նոր հնգամյակի անցած ավելի քան 4
տարիների ընթացքում սովետական մարդիկ
արագորեն բուժում էին Հայրենական Մեծ
պատերազմի տարիներին մեր երկրին հասց-
ված վերքերը, նորանոր հաջողություններ
ձեռք բերում կոմունիզմի կառուցման բոլոր
ճակատամասերում։ Հետպատերազմյան ժա-
մանակաշրջանում ժողովրդական տնտեսու-
թյան վերականգնման ու զարգացման գոր-
ծում մեր սոցիալիստական հասարակար-
գը ցուցադրում է նույնպիսի կենսունակու-
թյուն և դինամիկ ուժ, ինչպես և պատերազ-
մի ժամանակ։ Ընկեր Ստալինը դեռևս 1946
թվի փետրվարի 9-ին, Մոսկվա քաղաքի
Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողնե-
րի նախընտրական ժողովում արտասանած
պատմական ճառում նշելով նոր հնգամյակի
հիմնական խնդիրները, հանճարեղ կերպով
շարադրել է մեր երկրում կոմունիզմի կա-
ռուցման հոյակապ ծրագիրը, ցույց է տվել
կոմունիստական պարտիայի անելիքները։
Անշեղորեն ղեկավարվելով ընկեր Ստալինի
ցուցումներով, մեր երկրի աշխատավորնե-
րը աշխատանքային անօրինակ սխրագոր-

ծություններ են կատարել, հարաճուն վերելք ստեղծել սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության, սովետական գիտության, կուլտուրայի, գրականության և այլ բնագավառներում։ Նոր հնգամյակի անցած ավելի քան 4 տարվա արդյունքները փայլուն կերպով վկայում են տնտեսության սոցիալիստական սիստեմի բացարձակ գերազանցությունն ու առավելությունները կապիտալիստականի նկատմամբ։ Այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրները գնալով ավելի ու ավելի են թաղվում տնտեսական ճգնաժամի մեջ, երբ ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրանքը 1948 թվի հոկտեմբերից մինչև 1949 թվի հոկտեմբերը իջել է 22 տոկոսով, այդ նույն ժամանակամիջոցում ՍՍՌՄ-ի արդյունաբերության համախառն արտադրանքը աճել է 20 տոկոսով, և 1949 թվի վերջին, նախապատերազմյան 1940 թվի ամսական միջին արտադրանքը գերազանցել է ավելի քան 53 տոկոսով։ ՍՍՌՄ արդյունաբերական ձեռնարկություններում ծավալվում է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը, արմատավորվում է սովետական նոր, առաջավոր տեխնիկան, մեքենայացվում, ավտոմատացվում և էլեկտրիֆիկացվում են արտադրու-



թյան պրոցեսները։ Բավական է նշել, որ միայն 1949 թվին սոցիալիստական արդյունաբերության մեջ գործարկվել են ավելի քան 300 նոր կարևորագույն կոնստրուկցիաներ, ձեռնարկություններում արմատավորվել են 450 հազար գյուտարարական-ռացիոնալիզատորական առաջարկություններ։ 1949 թվի ստալինյան մրցանակները պայծառ կերպով վկայում են մեր երկրի տեխնիկական պրոգրեսի մասին։ Հարաճուն կերպով զարգանում և նոր վերելքի ուղին է բռնել սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Կոլխոզային կարգերը, որ իրենց ուժն ու կենսունակությունը առանձնապես դրսևորեցին Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, հանդիսանում են միակ ճիշտ ուղին և լայն հնարավորություններ են տալիս երկրում մթերքների իսկական առատություն ստեղծելու, ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու համար։ Ամբողջությամբ վերցրած ՍՍՌՄ-ի գյուղատնտեսությունը 1949 թվին, այսինքն նոր հնգամյակի չորրորդ տարվա վերջին, գերազանցեց նախապատերազմյան՝ 1940 թվի մակարդակը։ Մեր երկրում լուծված է հացահատիկի պրոբլեմը՝ 1949 թվին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմեց

7,6 միլիարդ փութ, համարյա հասնելով 1950 թվի համար սահմանված մակարդակին։ Աճում է սոցիալիստական գյուղատնտեսության մեքենայացումը և էլեկտրիֆիկացումը։ 1949 թվին մեր գյուղատնտեսությունը ստացել է 4—5 անգամ ավելի տրակտորներ, ավտոմեքենաներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ, քան նախապատերազմյան 1940 թվին։ Մինչև 1950 թվի գարունը տրակտորների թիվը 1949 թվի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 22 տոկոսով։ Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել բնության վերափոխման ստալինյան պլանը կենսագործելու, սոցիալիստական անասնաբուծության գլխաքանակն ավելացնելու, մթերատվությունը բարձրացնելու ասպարեզներում։ Սովետական հայրենասերները, ապահովելով բնության վերափոխման ստալինյան պլանի կենսագործումը, իրենց են հնազանդեցնում բնության ուժերը, կառուցում տասնյակ հազարավոր ջրանցքներ, ջրամբարներ, չորացնում և ցամաքացնում են ճահիճները։ Մեր երկրի աշխատավորները մայիսմեկյան տոնի օրը հպարտությամբ կամփոփեն գիտության, գրականության, կուլտուրայի և ժողովրդա-



կան տնտեսության մյուս բոլոր բնագավառներում ձեռք բերած հաղթանակները։

ՍՍՌՄ-ում այժմ մոտ մեկ և կես անգամ շատ գիտական ինստիտուտներ կան և 2 անգամ ավելի շատ գիտական աշխատողներ, քան եղել է պատերազմից առաջ, ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն, միջին տեխնիկական կրթությամբ մասնագետների թիվը նախապատերազմյան ժամանակի համեմատությամբ աճել է 68 տոկոսով։ Սովետական գիտության նվաճումներից մեկը ատոմային էներգիայի գաղտնիքին տիրապետելն է, որը օգնում է մեր երկրի աշխատավորության հետագա առաջընթացին դեպի կոմունիզմ։ ՍՍՌՄ-ի տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում և մասնագիտական մյուս ուսումնական հաստատություններում սովորում են ավելի քան 36 միլիոն մարդ. բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ մեկ միլիոն 128 հազար մարդ։ Սովետական գիտնականները, արվեստագետները, գրողները անշեղորեն ղեկավարվելով մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի իդեոլոգիական հարցերի վերաբերյալ ծրագրային որոշումներով, իրենց ստեղծագործություններով բազմա-

*պատկում են մեր երկրի փառքը, ստեղծում են ստալինյան դարաշրջանին արժանի երկեր։ Լուծվում է քաղաքի և գյուղի միջև, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև հակասությունները վերացնելու խնդիրը։*

*Գնալով է՛լ ավելի է աճում ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակը։ Եթե կապիտալիստական երկրներում օր օրին վատթարանում է աշխատավորների նյութական վիճակը, անընդհատ բարձրանում են ապրանքների գները, իջնում բանվորների ռեալ աշխատավարձը, աճում է գործազրկությունը, ապա ՍՍՌՄ-ում դրությունը միանգամայն հակառակն է։ Սովետական կառավարությունը հետևողականորեն լայն սպառման առարկաների գների իջեցում կատարելով, հետապնդում է է՛լ ավելի բարելավել աշխատավորության նյութական դրությունը։ Մինչև այժմ, 1947 թվի մթերային և արդյունաբերական ապրանքների քարտային սիստեմը վերացնելուց հետո, Սովետական պետությունը լայն սպառման ապրանքների գների արդեն երեք իջեցում է անցկացրել։ Ըստ որում, գների առաջին իջեցումից բնակչությունը տարվա ընթացքում շահել է 86 միլիարդ ռուբլի, երկրորդ իջեցումից՝ 71 միլիարդ ռուբլի,*



*իսկ երրորդ իջեցումից բնակչության տարեկան շահումը կազմելու է 110 միլիարդ ռուբլի։ Կայունացել է սովետական ռուբլին, բարձրացել նրա կուրսը օտարերկրյա վալյուտաների նկատմամբ։*

*Սովետական Միության հզոր ընտանիքում մայիսմեկյան տոնը նորանոր նվաճումներով են դիմավորում Սովետական Հայաստանի աշխատավորները։ Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ռուս մեծ ժողովրդի և ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդների եղբայրական օգնությամբ ու համագործակցությամբ հասել են ժողովրդական տնտեսության, կուլտուրայի, գիտության, գրականության և արվեստի նոր, հզոր վերելքի ու ծաղկման։ Սովետական Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը անփոփոխ գներով 1949 թվին՝ նախապատերազմյան 1940 թվի համեմատությամբ կազմեց 215 տոկոս։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1949 թվին՝ նախապատերազմյան 1940 թվի համեմատությամբ կազմեց բամբակինը՝ 135 տոկոս, ծխախոտինը՝ 240 տոկոս, շաքարի ճակնդեղինը՝ 274 տոկոս, կարտոֆիլինը՝ 321 տոկոս։ Հացահատիկի համախառն բերքը գերազանցել է 1940 թվի մակարդակը։ Լուրջ հաջողություն-*

*ներ են ձեռք բերված գիտության, կուլտուրայի, քաղաքների և շրջանային կենտրոնների բարեկարգման, աշխատավորների նյութական, կուլտուրական մակարդակը բարձրացնելու ուղղությամբ։*

*Իրագործվում է ընդհանուր պարտադիր տարրական ուսուցումը գյուղում և յոթնամյա ուսուցումը քաղաքում։*

***

*Սովետական Միությունը կայուն և երկարատև խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի մեծ դրոշակակիրն է։*

*Սովետական Միության հետ միասին կայուն խաղաղության դրոշի ներքո են ընթանում ժողովրդական դեմոկրատիայի երկրները, ամբողջ աշխարհի աշխատավոր մարդիկ։ Ժողովրդական դեմոկրատիայի ռեժիմը ապահովում է սոցիալիստական հասարակարգի հաջող կառուցումը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։ Սոցիալիստական սեկտորը Չեխոսլովակիայի արդյունաբերության մեջ կազմում է 98 տոկոս, Լեհաստանում՝ 96 տոկոս, Հունգարիայում՝ 92 տոկոս։ Սոցիալիստական սեկտորի տեսակարար կշիռը Բուլղարիայի եկամտի մեջ կազմում է մոտ 60 տոկոս։ Լեհ ժողովուրդը*



*լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը տնտեսության բոլոր բնագավառներում, հաջողությամբ և ժամկետից շուտ կատարեց իր եռամյա պլանը և այժմ ձեռնամուխ է եղել իր վեցամյա պլանի կենսագործմանը։ Բուլղարիայի արդյունաբերական ձեռնարկությունները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, 1949 թվի պլանը կատարեցին 107 տոկոսով, 1948 թվի համեմատությամբ տալով 30 տոկոս աճ։*

*Երկրորդ համաշխարհային պատերազմի կարևորագույն արդյունքներից է չինական ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակը։ Չինական ռևոլյուցիայի հաղթանակը մարքսիզմ-լենինիզմի մի նոր փայլուն հաղթանակն է։*

*Եվրոպայի պատմության մեջ վճռական նշանակություն ունի և շրջադարձային կետ է հանդիսանում Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ստեղծումը։*

*Աճում են գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները։ Խաղաղության կողմնակիցների շարժումն աճելով վիթխարի ուժ է դարձել։ Աշխարհում առաջին անգամ ստեղծվել է խաղաղության կողմնակիցների*

միասնական ճակատ։ Խաղաղության կողմնակիցների Մշտական կոմիտեի կազմի մեջ մտնում են խաղաղության կողմնակիցների 52 ազգային կոմիտեներ։ Պատմության զարգացման ամբողջ ընթացքը երկրագնդի բնակչության վիթխարի մեծամասնությունն ավելի ու ավելի ուժեղ կերպով է ներգրավում խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող ակտիվ պայքարի մեջ։ Նոր, ազատ կյանքի կառուցման ուղին են ոտք դրել հարյուր միլիոնավոր մարդիկ՝ Պրագայից ու Տիրանայից մինչև Պեկին ու Պխենյան։ Պատմության մեջ հասարակական ոչ մի ուսմունք այնքան խոր ազդեցություն չի գործել ժողովուրդների և պետությունների ճակատագրի վրա, որքան Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի ամենահաղթ ուսմունքը։ Ընդամենը տասը տարի առաջ, արտասահմանյան երկրներում կար մեկ միլիոնից մի փոքր ավելի կոմունիստ, իսկ այժմ արտասահմանյան կոմունիստական և բանվորական պարտիաների շարքերում միավորված է մոտ 18 միլիոն մարդ։

Այն ժամանակ, երբ դեմոկրատական լագերը անշեղորեն ամրապնդվում և ընդլայնվում է, իմպերիալիստական ռեակցիայի



լագերը գնալով ավելի ու ավելի է թուլանում։ Կապիտալիստական երկրների, և առաջին հերթին ԱՄՆ-ի էկոնոմիկան ցնցվում է հարաճուն ճգնաժամի հարվածների տակ։ Ամերիկյան ռեակցիոներները, որոնք իրենց երևակայում են կապիտալիզմի «փրկիչներ», սոցիալիզմի և դեմոկրատիայի դեմ մղվող իրենց պայքարում չեն խորշում ամենաստոր միջոցներից և հնարանքներից։ Նրանք օգտագործում են դավաճան Տիտոյի տիպի ֆաշիստական վիժվածքներին, կապիտալի աջ սոցիալիստական սպասարկուներին, Վատիկանը և կաթոլիկ եկեղեցու ռեակցիոն վերնախավին։ «Կեղտոտ գրպարտությունը և ատոմային շանտաժը,— գրում է «Պրավդա»-ն,— լրտեսությունն ու դիվերսիաները, տեռորը և կաշառքը, դավադրությունների կազմակերպումը և թշնամության հրահրումը ժողովուրդների միջև,— այս բոլոր նողկալի միջոցները գործադրվում են ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող կլիկների կողմից նրանց մարդատյաց դիտավորությունները իրագործելու համար»։

Մայիսմեկյան տոնի նախօրյակին շատ երկրներում մի կամպանիա սկսվեց, որի նպատակն է ստորագրություններ հավաքել խաղաղության կողմնակիցների Մշտական

կոմիտեի այն դիմումի տակ, որով պա-
հանջվում է արգելել ատոմային զենքը և
պատերազմի հանցագործ հայտարարել այն
կառավարությանը, որը առաջինը կգործադ-
րի այդ զենքը։ Բոլոր ազատասեր և բարի
կամքի մարդիկ անկասկած կստորագրեն այդ
դիմումի տակ։

Պայքարը երկարատև և կայուն խաղաղու-
թյան համար՝ դա պայքար է ժողովուրդ-
ների բարեկամական համագործակցության,
դեմոկրատիայի և ժողովուրդների լավա-
գույն ապագայի համար։ Աշխարհի պրոգրե-
սիվ մարդկությունը, ազատասեր և խաղա-
ղասեր ժողովուրդները վստահ են իրենց
գործի հաղթանակի վրա, որովհետև այդ
շարժման ավանգարդումն է Սովետական
հզոր Միությունը, որին առաջնորդում է դե-
պի կոմունիզմի լուսաշող գագաթները հան-
ճարեղ Ստալինը։ Ստալինը ժողովուրդների
բարեկամության և համագործակցության վեհ
դրոշն է, նրանց երջանկությունն ու ուրա-
խությունը։

Սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերը,
շարունակելով իր խաղաղ, ստեղծագործ
աշխատանքը, աչալուրջ կերպով հետևում է
նոր պատերազմի իմպերիալիստական հրը-
ձիգների ոտնձգություններին։ Աշխարհում



չկա այնպիսի ուժ, որը կարողանա կասեց-
նել դեմոկրատիայի և սոցիալիզմի ուղին
ոտք դրած ժողովուրդների հաղթական երթը։
Սովետական Միության ստալինյան արտա-
քին իմաստուն քաղաքականությունը վայե-
լում է ամբողջ աշխարհի աշխատավորու-
թյան սերն ու համակրանքը, հասարակ
մարդկանց ջերմ պաշտպանությունը։

Լենինի-Ստալինի ամենահաղթ գաղա-
փարները լուսավորում են ժողովուրդների
ուղին դեպի երջանիկ ապագան։

Մայիսմեկյան տոնի օրը սովետական
ժողովուրդը նորից ու նորից կդրսևորի իր
անհուն սերն ու նվիրվածությունը բոլշևիկ-
ների պարտիայի, Սովետական կառավա-
րության, մեր բոլոր հաղթանակների մեծ
կազմակերպիչ ու ոգեշնչող ընկեր Ստալինի
նկատմամբ։ Սովետական ժողովուրդը, զին-
ված բոլշևիկյան պարտիայի և մեծ Ստալինի
մարտական ցուցումներով, հաղթականորեն
ընթանում է դեպի կոմունիզմի լուսաշող
գագաթները։ Այս օրերին Սովետական Միու-
թյան բոլոր ժողովուրդների լեզուներով հըն-
չում է ՀամԿ(բ)Պ Կենտկոմի մարտական
կոչը՝ Լենինի դրոշով, Ստալինի առաջնոր-
դությամբ, առա՜ջ դեպի կոմունիզմ։

—○—

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Հինգ տարի առաջ, 1945 թ. մայիսին Սովետական ժողովուրդը վերջնականապես ջախջախեց գերմանա-ֆաշիստական զավթիչներին և պատմական հաղթանակ նվաճեց Հայրենական Մեծ պատերազմում։

Դրանից երեք ամիս հետո, նույն տարվա օգոստոսին Սովետական Միության Զինված ուժերը ջախջախեցին ճապոնական իմպերիալիզմին։ Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմը ավարտվեց հաղթանակով։

Դեռևս օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի և սպիտակ գվարդիականների դեմ մղվող պայքարում հաղթանակ նվաճելուց հետո Վ. Ի. Լենինն ասում էր.

«Մենք ավարտեցինք պատերազմի մի շարքը, մենք պետք է նախապատրաստվենք երկրորդի համար, բայց այն ե՞րբ կգա, մենք չգիտենք և պետք է այնպես անենք, որ այն ժամանակ, երբ այն կգա,



մենք լինենք հարկավոր բարձրության վրա»։

Սովետական իշխանությունը ցարիզմից և կապիտալիզմից որպես ժառանգություն ստացավ մի հետամնաց, քայքայված, աղքատ երկիր։

Սովետական իշխանության հաստատումով, մեր երկիրը կապիտալիստական շրջապատման պայմաններում բռնեց սոցիալիզմի կառուցման ուղին, որը միակ ուղին էր վերացնելու այդ հետամնացությունը։

Լենին-Ստալինի պարտիան հռչակեց երկրի ինդուստրացման և գյուղի կոլեկտիվացման քաղաքականությունը։ Ջախջախելով տրոցկիստական-բուխարինական թշնամական բանդաների դիմադրությունը, բոլշևիկյան պարտիան անշեղորեն գնաց ինդուստրացման և կոլեկտիվացման քաղաքականությունը կենսագործելու ուղիով, ձեռք բերելով խոշորագույն հաղթանակներ։ Սոցիալիստական ինդուստրացման և գյուղի կոլեկտիվացման ստալինյան պլանի կենսագործումն ամբողջապես վերափոխեց մեր Հայրենիքը։ Ստեղծվեց սոցիալիստական հզոր ինդուստրիա և սոցիալիստական առաջավոր գյուղատնտեսություն։ Կառուցելով սոցիալիզմը, սովետական ժողովուրդը պայքար

ծավալեց սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու համար։

Մեր երկրի արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը երկրին տալիս էին այն ամենը, ինչ անհրաժեշտ էր ժողովրդի բարեկեցության բարձրացման և երկրի պաշտպանական կարիքների համար։ 1940 թվականին մեր երկիրն արտադրում էր 15 միլիոն տոննա չուգուն, 1913 թվականին արտադրած 4 միլիոն 220 հազար տոննայի դիմաց, կամ մոտ չորս անգամ ավելի, 18 միլիոն 300 հազար տոննա պողպատ՝ 4 միլիոն 230 հազար տոննայի դիմաց, կամ չորս ու կես անգամ ավելի, քան 1913 թվին, 166 միլիոն տոննա ածուխ՝ 29 միլիոն տոննայի փոխարեն, կամ հինգ և կես անգամ ավելի, 31 միլիոն տոնա նավթ՝ 9 միլիոն տոննայի փոխարեն, կամ երեք և կես անգամ ավելի, 38 միլիոն 300 հազար տոննա ապրանքային հացահատիկ՝ 21 միլիոն 600 հազար տոննայի դիմաց, կամ 17 միլիոն տոննայով ավելի, 2 միլիոն 700 հազար տոննա բամբակի հումք՝ 740 հազար տոննայի դիմաց, կամ երեք և կես անգամ ավելի քան արտադրվում էր առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին, 1913 թվականին։

Սովետական իշխանության ինդուստրաց-



ման և գյուղի կոլեկտիվացման քաղաքականությունը հիմնովին փոխեց նաև մեր երկրի դասակարգային կառուցվածքը։ Շահագործող դասակարգերը լիկվիդացվեցին, ստեղծվեց ժողովրդի բարոյական և քաղաքական կուռ միասնություն։

1939 թ. մարտին պարտիայի 18-րդ համագումարում ընկեր Ստալինը ասում էր. «պատերազմի դեպքում մեր բանակի թիկունքը և ֆրոնտը— նկատի ունենալով նրանց միատարրությունն ու ներքին միասնությունը— է՛լ ավելի ամուր կլինի, քան որևէ մի այլ երկրում, որի մասին հարկ է որ հիշեն ռազմական ընդհարումների արտասահմանյան սիրահարները»։

Այդ նույն ժամանակ Սովետական Միության շրջապատում գտնվող բուրժուական երկրները բզկտվում էին տնտեսական ու քաղաքական ճգնաժամի մեջ. սրվում էին հակասությունները մի կողմից կապիտալիստական երկրների և մեր սոցիալիստական երկրի միջև և մյուս կողմից տարբեր բուրժուական պետությունների միջև։ Բուրժուական պետություններն աշխատում էին երկրի ներսում ճնշել բանվորների ու գյուղացիների ռևոլյուցիոն շարժումները, ուժեղացնել շահագործման ռեժիմը. արտաքին քաղաքա-

կանության մեջ կապիտալիստները ձգտում էին նոր պատերազմ սկսել աշխարհը նորից վերաբաժանելու, գաղութների, հումքի աղբյուրների և շուկաների գրավման, ուրիշ երկրների ժողովուրդների ստրկացման համար։

Պատերազմից դեռ շատ առաջ Գերմանիայում, Ճապոնիայում, Իտալիայում և մի քանի այլ երկրներում բուրժուազիան իշխանության գլուխ բարձրացրեց ֆաշիստական պարտիային, որն ամենագիշատիչ և ամենաավազակային իմպերիալիստական պարտիան էր և տենդորեն պատրաստվում էր զավթողական պատերազմի։

Անգլո-ամերիկյան և ֆրանսիական բուրժուական ռեակցիոն կառավարությունները հաշվի էին առնում, որ ֆաշիզմը լավ զենք է իրենց ձեռքին սովետական երկրի դեմ կռվելու համար։ Այդ նպատակով էլ ամերիկյան, անգլիական և ֆրանսիական կապիտալիստական կառավարությունները դեռևս պատերազմից շատ առաջ զենք տրամադրելով, վարկեր տալով և ամեն բանով օգնում էին պատերազմի երկու օջախներին՝ Գերմանիային և Ճապոնիային, որպեսզի նրանք զարգացնեին իրենց ռազմական արդյունաբերությունը, զինեին իրենց զավթողական



բանակները։ Դրա հետ միասին նրանք հրահրում էին ֆաշիստներին՝ հարձակվելու Սովետական Միության վրա։

Այս բոլորը հաշվի առնելով, Սովետական Կառավարությունը շարունակում էր խաղաղասիրական քաղաքականություն վարել, մերկացնում էր պատերազմի հրձիգներին։ Միաժամանակ բոլշևիկյան պարտիան և Սովետական կառավարությունը մեր ամբողջ երկիրը նախապատրաստում էին հակահարված տալու թշնամուն՝ մեր երկրի վրա նրա կողմից հարձակման դեպքում։

Ընկեր Ստալինը սովորեցնում էր որ՝ «Հարկավոր է ամեն կերպ ուժեղացնել ու ամրապնդել մեր Կարմիր Բանակը, Կարմիր Նավատորմը, Կարմիր Ավիացիան, Պաշը-Ավիաքիմը։ Հարկավոր է մեր ամբողջ ժողովուրդը պահել մոբիլիզացիոն պատրաստականության վիճակում՝ ռազմական հարձակման վտանգի դեմ-հանդիման, որպեսզի ոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների ոչ մի ֆոկուս չկարողանան մեզ հանկարծակիի բերել...»։

***

1941 թվի հունիսի 22-ին ֆաշիստական Գերմանիայի և նրա վասալների բանակները ուխտադրուժ կերպով հարձակվեցին ՍՍՌՄ-ի

վրա, Բարենցի ծովից սկսած մինչև Սև ծովն ընկած ամբողջ ճակատով։

Գերմանական ֆաշիստները սոցիալիզմի երկրի վրա հարձակվելուն նախապատրաստվում էին դեռևս պատերազմից շատ առաջ։ Գերմանիայի ֆաշիստական կառավարությունը մշակել էր ՍՍՌՄ-ի վրա հարձակվելու և մեր երկիրը զավթելու պլան, որը կոչվում էր «Բարբարոսայի պլան»։ Այդ պլանի համաձայն հիտլերյան Գերմանիայի և նրա դաշնակիցների բանակները պետք է հանկարծակի ներխուժեյին ՍՍՌՄ-ի տերիտորիան, «կայծակնային հարվածով» մի քանի շաբաթում ջախջախեյին ու ցրեին Սովետական Բանակը, տապալեին Սովետական իշխանությունը։ Հիտլերականները ծրագրել էին զավթել մեր ամբողջ երկիրը, ոչնչացնել ՍՍՌՄ-ի մեջ մտնող բոլոր ռեսպուբլիկաները, դրանք դարձնել գաղութներ, իսկ ժողովուրդներին ստրկացնել։ Ֆաշիստները երազում էին զավթելով Սովետական մետաղը, նավթը, ածուխը, հացը և այլ հարստությունները, իրականացնել իրենց ծրագրերը՝ զավթել ամբողջ աշխարհը, հասնել համաշխարհային տիրապետության։

Հիտլերը հույս ուներ, թե Սովետական Միության թիկունքը անկայուն է, Սովետական կարգերը թույլ են։ Նա հույս ուներ, թե երբ ֆաշիստական բանակը ներխուժի ՍՍՌՄ-ի տերիտորիան, կոնֆլիկտներ առաջ կգան ՍՍՌՄ-ի բանվորների ու գյուղացիների միջև և մեր երկրի տարբեր ժողովուրդների միջև, ապստամբություններ կծագեն Սովետական կառավարության դեմ, Կարմիր Բանակը ցիր ու ցան կլինի, իսկ հիտլերյան բանակներին կհաջողվի արագորեն գրավել երկիրը։

Ֆաշիստների սկսած այդ պատերազմը անարդարացի, զավթողական, ավազակային պատերազմ էր։

Պատերազմն սկսվեց Գերմանիայի համար նպաստավոր, իսկ ՍՍՌՄ-ի համար աննըպաստ պայմաններում։ Իմպերիալիստական Գերմանիան ՍՍՌՄ-ի վրա հարձակվեց երբ նրա բանակը լրիվ մոբիլիզացված էր, գրավել էր Եվրոպայի երկրների մեծ մասը և պատերազմ վարելու փորձ ուներ։ Ֆաշիստական 170 դիվիզիաներ գաղտնի մոտեցել էին ՍՍՌՄ-ի սահմաններին։ Չնայած Սովետական ինքնաթիռներն ու տանկերն իրենց որակով գերազանցում էին գերմանականին, սակայն պատերազմի սկզբում հիտլերյան բանակն ավելի շատ ինքնաթիռներ և տանկեր ուներ, քան Սովետական Բանակը։ Ֆաշիստա-

կան բանակի համար գերմանական արդյունաբերությունից բացի աշխատում էր նաև Եվրոպայի գրեթե բոլոր երկրների արդյունաբերությունը։ Գերմանիային ուժեղ կերպով օգնում էին Իսպանիան, Թուրքիան, Շվեդիան, Եվրոպայում Գերմանիայի դեմ չկար երկրորդ ռազմաճակատ և Սովետական Բանակը իմպերիալիստական բանակների դեմ կռվում էր մեն-մենակ։

Ահա այդ բոլորի հետևանքով, ֆաշիստական զավթիչներին հաջողվեց պատերազմի սկզբում ներխուժել մեր երկիրը. մահացու սպառնալիք կախվեց ՍՍՌՄ-ի վրա։

1941 թվի հունիսի 22-ից Սովետական Բանակը հարվածով պատասխանեց ֆաշիստական զավթիչներին։ Սովետական Կառավարությունը և բոլշևիկյան պարտիան մեր երկրի ժողովուրդներին կոչ արին՝ պաշտպանել Սովետական Հայրենիքը, հետ մղել թշնամուն։ ՍՍՌՄ-ի ժողովուրդների ուժերը արագորեն մոբիլիզացնելու համար պատերազմի առաջին օրերում ստեղծվեց Պաշտպանության Պետական Կոմիտե, որի Նախագահ նշանակվեց Ի. Վ. Ստալինը։ Երկրի կառավարման և Հայրենիքի պաշտպանության բոլոր գործերի ղեկավարությունը հանձնվեց Պաշտպանության Պետական Կոմիտեին։



Ընկեր Ստալինը նշանակվեց ՍՍՌՄ-ի Պաշտպանության Ժողովրդական Կոմիսար և Սովետական Բանակի Գերագույն Գլխավոր Հրամանատար։

1941 թ. հուլիսի 3-ին ռադիոյով ելույթ ունեցավ ընկեր Ստալինը։ Բացահայտելով և մերկացնելով ֆաշիստական զավթիչների ավազակային նպատակները, ընկեր Ստալինը ասաց. «Խոսքը Սովետական պետության կյանքի և մահու մասին է, ՍՍՌՄ-ի ժողովուրդների կյանքի և մահու մասին, այն մասին, թե Սովետական Միության ժողովուրդները պետք է լինեն ազատ, թե պետք է ընկնեն ստրկության տակ»։ Ընկեր Ստալինը բացատրեց, որ Սովետական Միության պատերազմը ֆաշիստական Գերմանիայի դեմ ազատագրական, արդարացի պատերազմ է, նա նպատակ ունի պաշտպանել մեր երկիրը իմպերիալիստական զավթիչներից և օգնել Եվրոպայի ստրկացված ժողովուրդներին, որ նրանք էլ ազատագրվեն ֆաշիստական բռնակալներից։

Ընկեր Ստալինը կոչ արեց Սովետական բոլոր մարդկանց վերջ դնել խաղաղ ժամանակվա բարեհոգությանը, ամբողջ աշխատանքը վերակառուցել պատերազմական

ձևով, դուրս գալ ազատագրական պատերազմի թշնամու դեմ, պաշտպանել Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի և սոցիալիզմի հաղթանակի նվաճումները։ Ընկեր Ստալինն իր ռադիո-ելույթը վերջացրեց հետևյալ խոսքերով.

«Մեր բոլոր ուժերը՝ մեր հերոսական Կարմիր Բանակին, մեր փառապանծ Կարմիր Նավատորմին աջակցելո՜ւ համար։

Ժողովրդի բոլոր ուժերը՝ թշնամուն ջախջախելու համար։

Առա՜ջ հանուն մեր հաղթանակի»։

Սովետական Միության ժողովուրդներն իրենց սիրելի առաջնորդի և հանճարեղ զորավար Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ դուրս եկան Հայրենական ազատագրական պատերազմի։

***

Չորս տարի Սովետական ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հերոսական պայքար մղեց ֆաշիստական զավթիչների բանակների դեմ։

Պատերազմի առաջին շրջանում Սովետական հրամանատարությունը, կիրառելով ակտիվ պաշտպանության տակտիկա, սովետական զինված ուժերի համառ, կայուն դիմադրության միջոցով ոչնչացնում էր թշնա-



մու զինված ուժն ու տեխնիկան։ 1941 թվի ամառը Օդեսա քաղաքի պաշտպանությունը տևեց 69 օր։ Սովետական բանակն այդ քաղաքի շրջանում ոչնչացրեց ֆաշիստական զորքերի 12 դիվիզիա։ Մոսկվայի մատույցներում ֆաշիստական բանակները ջախջախվեցին և վերջ դրվեց հիտլերյան զավթիչների բանակի «անպարտելիության» առասպելին։ 1942 թվականի պաշտպանողական մարտերում Սովետական Բանակը նոր պարտությունների մատնեց թշնամուն։

Անգլիան և Ամերիկան սաբոտաժի ենթարկեցին երկրորդ ռազմաճակատի բացումը և դրանով օգնեցին գերմանական ֆաշիզմին, որը իր բոլոր զինված ուժերը նետեց սովետական ճակատի հարավային հատվածը, ստեղծելով ուժերի ժամանակավոր գերակշռություն. սակայն այդ էլ չօգնեց օկուպանտներին։ Սովետական Բանակը մեն-մենակ կռվելով ֆաշիստական բանակների դեմ, հարված հարվածի հետևից էր հասցնում նրանց։ Սևաստոպոլի պաշտպանները 8 ամիս պահում էին սևծովյան այդ ամրոցը և բնաջինջ անում հիտլերյան զավթիչներին։ Միայն Սևաստոպոլի պաշտպանները 1942 թ. գարնանը մարտեր էին մղում գերմանա-ֆաշիստական 16 դիվիզիայի դեմ, մինչդեռ

«դաշնակիցների» բոլոր բանակները միասին վերցրած իրենց կողմն էին գրավել գերմանական և իտալական ընդամենը 15 դիվիզիա — Աֆրիկայում։ Սևաստոպոլի պաշտպանները բնաջինջ արին թշնամու 300 հազար զինվոր ու սպա։

Ստալինգրադի ճակատամարտը հանդիսացավ գերմանական-իմպերիալիստական բանակի մայրամուտը։ Այդ ճակատամարտում Սովետական Բանակը ջախջախեց գերմանա-ֆաշիստական բանակի ողնաշարը։

Ստալինգրադի մոտ մղվող ճակատամարտի օրերին հակահարձակման անցան նաև Անդրկովկասյան ռազմաճակատի զորքերը, որոնք ջախջախեցին թշնամուն և նրան դուրս վռնդեցին Կովկասից։

Ընկեր Ստալինի հրամանով հակահարձակման անցնելով, Սովետական Բանակը Ստալինգրադի շրջանում շրջապատեց գերմանա-ֆաշիստական 300 հազարանոց բանակը, որի մի մասը ոչնչացվեց, իսկ մնացած մասը գերի վերցվեց։

Սովետական Բանակը 1942 թ. աշնանը Ստալինգրադի և Կովկասի մատույցներից



անցնելով հարձակման, այլևս նախաձեռնությունը չտվեց թշնամուն, մինչև նրա լիակատար ջախջախումը։

Թիկունքում հերոսաբար էին աշխատում մեր երկրի բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան, անընդհատ բանակին տալով առաջնակարգ զենք, զինամթերք, հանդերձանք և պարենամթերքներ։

1943—1944 թվականների հարձակողական մարտերում Սովետական բանակները, կատարելով հանճարեղ զորավար Ի. Վ. Ստալինի ստրատեգիական պլանները, գերմանա-ֆաշիստական բանակներին ջախջախեցին Կուրսկի շրջանում, Դնեպրի բնագծում, Թամանում, ազատագրեցին Ուկրաինան, Լենինգրադը, Ղրիմը, Բելոռուսիան, Մերձբալթիկան և թշնամուն դուրս վռնդեցին Սովետական երկրի սահմաններից։

Կատարելով իրենց ազատագրական միսիան, Սովետական Զինված ուժերը թշնամուն հետապնդեցին իր տերիտորիայում և կտրեցին ու անցան եվրոպական 10 երկրների պետական սահմանները, ֆաշիզմի լծից ազատագրելով այդ երկրների ժողովուրդներին։

Սովետական Բանակի հաղթանակի պսակը հանդիսացավ Բեռլինի ճակատամարտը։

Բեռլինի գրավման համար մղված մարտե-
րում Սովետական Բանակը 1945 թվականի
ապրիլի 22-ի հարձակման օրը 22 հազար
թնդանոթներից կրակ բաց արեց գերմանա-
կան իմպերիալիզմի որջի վրա։ Նույն օրը
Բեռլինը ռմբակոծեցին Սովետական 4000
ինքնաթիռ։ Բեռլինը բոլոր կողմերից շրջա-
պատվեց։ Այս անգամ Սովետական Բանակը
Բեռլինի շրջակայքի ամեն մի կիլոմետր առա-
րածության վրա դրել էր 500-ից ավելի
հրանոթ և ականանետ։ Բեռլինի վրա կրա-
կող սովետական հրանոթների և ականա-
նետների թիվը հասցվեց 41 հազարի։ Ապ-
րիլի 30-ին հաղթանակի դրոշը արդեն ծա-
ծանվում էր Ռայխստագի վրա։ 1945 թ.
մայիսի 2-ին Բեռլինի կայազորը զենքը
վայր դրեց և գերի հանձնվեց Սովետական
հաղթող բանակին։

Ֆաշիստական Գերմանիան արդեն լիովին
ջախջախված էր Սովետական բանակների
հարվածների տակ։ Մայիսի 8-ին ֆաշիս-
տական Գերմանիան իրեն պարտված ճանա-
չեց և լիովին կապիտուլյացիայի ենթարկ-
վեց։

Մայիսի 9-ը հայտարարվեց Հաղթանակի
օր։

Երկրորդ համաշխարհային պատերազմում



սովետական ժողովրդի տարած պատմական
հաղթանակները պայմանավորված էին սո-
վետական հասարակարգի, սովետական պե-
տական կարգի, Սովետական Զինված ուժե-
րի հզորությամբ ու կենսունակությամբ,
որոնց ուժ և ուղղություն էր տալիս բոլշևիկ-
ների պարտիան ընկեր Ստալինի առաջնոր-
դությամբ։

Պատերազմի ծանր փորձությունների օրե-
րին ընկեր Ստալինն իր ձեռքը վերցրեց Սո-
վետական Բանակի անմիջական ղեկավա-
րությունը, նրա զինումը, նրա հրամանա-
տարների ու մարտիկների կոփումը։ Ստալի-
նի հանճարեղ զորավարական արվեստը ա-
պահովեց Սովետական Բանակի փառապանծ
հաղթանակը։ Ստալինի անունը շուրթերին
սովետական մարդիկ գնացին Հայրենական
պատերազմի և հաղթեցին։

«Այդ մեր երջանկությունն է,— ասում է
ընկեր Մոլոտովը,— որ պատերազմական
դժվարին տարիներին Կարմիր Բանակին ու
սովետական ժողովրդին առաջ էր տանում
Սովետական Միության իմաստուն և փորձ-
ված առաջնորդ մեծ Ստալինը»։

Վստահորեն առաջ շարժվելով դեպի կո-
մունիզմ տանող ուղիով, սովետական ժո-
ղովուրդը և նրա Զինված Ուժերը չեն մոռա-

նում նոր պատերազմի վտանգի մասին,
որը բացահայտորեն նախապատրաստում
են իմպերիալիստները Ամերիկայի Միացյալ
Նահանգներում և Անգլիայում, որոնք կանգ-
նած են միջազգային ռեակցիայի գլուխը։
Սակայն Ամերիկայի և Անգլիայի իմպերիա-
լիստների, ինչպես նաև պատերազմի մյուս
բոլոր հրձիգների դեմ-հանդիման ներկա-
յումս կանգնած են խաղաղության կողմնա-
կիցների բազմաթիվ և համախմբված շար-
քերը, հանձինս հերոսական սովետական
ժողովրդի, Սովետական կառավարության և
ամբողջ աշխարհում խաղաղության ու դե-
մոկրատիայի համար մարտնչողների։ Սո-
վետական կառավարությունը հետևողակա-
նորեն և համառորեն պայքարում է խաղա-
ղության և միջազգային համագործակցու-
թյան համար։

Սովետական Զինված ուժերը ներկայումս
ավելի կատարելագործելով իրենց ռազմա-
քաղաքական կուփվածությունը, խորապես
յուրացնելով Հայրենական Մեծ պատերազմի
փորձը, ամուր կերպով կանգնած են խաղա-
ղության պաշտպանության դիրքերում, աչա-
լուրջ կերպով պաշտպանում են սովետական
ժողովրդի նվաճած հաղթանակը, մեր Հայ-
րենիքի սրբազան սահմանները։

—○—

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԻՐԱՎԱԶՐԿՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԱՂՔԱՏՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

*Իր ժամանակին լինելով Ամերիկայում, Ա. Մ. Գոր-
կին այսպես է նկարագրել Նյու-Յորքը. «Այսպիսի
հրեշավոր քաղաք ես առաջին անգամ եմ տեսնում։
Ես շատ եմ տեսել աղքատություն… բայց Իստ-Սայ-
դի (Նյու-Յորքի բանվորական ռայոններից մեկը—
խմբ.) աղքատության սարսափը մռայլ է այն ամենից,
ինչ ես գիտեմ։ Այդ փողոցներում, որոնք այնքան
լցված են մարդկանցով, որ կարծես ճավարով լի
պարկեր լինեն, երեխաները մայթերի աղբարկղնե-
րում ագահորեն հոտած բանջարի մնացորդներ են
որոնում, դրանք խժռում տեղն ու տեղը՝ ամբողջ
փոշոտ քամու հետ միասին, թանձր փոշու և հեղձուցիչ
տոթի մեջ…»։*

*Մաքսիմ Գորկու այս տողերը գրվելու պահից ի վեր
աշխատավորների դրությունը Ամերիկայի Միացյալ
Նահանգներում, ինչպես և կապիտալիստական մյուս
պետություններում, ոչ միայն չի փոխվել դեպի լա-
վը, այլև ավելի է վատացել։*

Ասենք այն չէր էլ կարող բարելավվել կապիտալիստական հասարակարգում։

Կապիտալիզմի ամբողջ պատմությունը՝ աշխատավորների շահագործումն ուժեղացնելու պատմություն է։ Ժողովրդական մասսաների շահագործման հաշվին աճում են կապիտալիստների շահույթները։ Այսպես, 1948 թվականին ամերիկյան մոնոպոլիստների շահույթները— 1939 թվականի համեմատությամբ աճեցին ՀԻՆԳ անգամ։ Անգլիայի կապիտալիստներն ու կալվածատերերը 1948 թվականին այնքան շահույթ ստացան, որ դա հավասար էր Անգլիայի ամբողջ բանվոր դասակարգի մեկ տարվա աշխատավարձի չորս հինգերորդին։ Թե ինչպիսի դաժան ձևեր է ընդունում շահագործումը կապիտալիզմի օրոք, երևում է Նոր Զելանդիայի «Աշխատանքի մինիստրության ժուռնալի»՝ ձեռնարկատերերին տված հետևյալ պաշտոնական ցուցումներից. աշխատանքի մի ընդունեք տարիքավոր մարդկանց, հեռացրեք բոլոր երիտասարդներին և տարիքավորներին, եթե նրանք ի վիճակի չեն պահպանելու տեմպը և չեն կարող աշխատել՝ ձեզ հետ լիովին համաձայն լինելով։ Մեքենաներն օգտագործեցեք որքան հնարավոր է, որից հետո դեն շպրտեք։ Ճիշտ այդպես էլ վարվեցեք մարդկանց հետ...

Բանվորները՝ կապիտալիստների իրավազուրկ ստրուկներն են։ Մի շարք երկրներում, օրինակ ԱՄՆ-ում, ձեռնարկատերերը նախքան մարդուն աշ-



խատանքի ընդունելը, նրան հարկադրում են պայմանագիր ստորագրել, որով բանվորը պարտավորվում է չմտնել որևէ բանվորական կամ պրոֆմիութենական կազմակերպության մեջ։ Որոշ երկրներում, օրինակ Ճապոնիայում և Հնդկաստանում, ստրուկների իսկական առևտուր է կատարվում։ Ընչազուրկ, սոված ու թշվառ գյուղացիները և բանվորները վաճառում են իրենց երեխաներին՝ ստրկության հանձնելով։ Ճապոնիայի որոշ ձեռնարկություններում բանվորների ամբողջ կազմի կեսը կազմում են ստրուկները։

Կապիտալիզմի պայմաններում աշխատավորության համար չարիք է գործազրկությունը։ Ներկայումս կապիտալիստական երկրներում կա ավելի քան 40 միլիոն գործազուրկ և կիսագործազուրկ։ Մի շարք երկրներում, օրինակ ԱՄՆ-ում Միավորված Ազգերի կազմակերպության քարտուղարության տվյալներով, միայն 1949 թվականին համարյա երկու անգամ ավելացավ ամբողջովին գործազուրկների թիվը։

Գործազուրկների դրությունը անասելի ծանր է։ Նրանք ոչինչ չունեն ո՛չ ուտելու, ո՛չ էլ բնակարանի վարձ վճարելու համար։ Կապիտալիստական երկրների մեծ մասում չկա պետական ապահովագրություն՝ գործազրկության դեպքում, ապահովում և նյութական օգնություն՝ հիվանդության, հաշմանդամության և ծերության դեպքում։ Սակայն նույնիսկ այն երկրներում, որտեղ բանվորների երկարատև պայքարից

հետո հաջողվել է սոցիալական ապահովագրություն մտցնել, ապահովագրական գումարները մուծում են իրենք՝ բանվորները: 1939—1946 թվականների ընթացքում ԱՄՆ-ի բանվորները և ծառայողները ապահովագրությանը մուծել են մոտ 4 միլիարդ 300 միլիոն դոլար, իսկ ստացել են ընդամենը 800 միլիոն դոլար: Պաշտոնական տվյալներով ԱՄՆ-ում նպաստ չի ստանում գործազուրկների 60-ից մինչև 70 տոկոսը, իսկ փաստորեն յուրաքանչյուր 40 գործազուրկից միայն մեկն է նպաստ ստանում: Եվ ինչ նպաստ է դա: Միսուրիի նահանգում գործազուրկներին վճարում են շաբաթական... կես դոլար:

Այն ժամանակ, երբ կապիտալիստների շահույթները վերջին տարիներին հսկայական չափով աճել են, աշխատավորների ռեալ աշխատավարձը շարունակ ընկնում է: Պաշտոնական աղբյուրները ընդունում են, որ սննդամթերքների գները նախապատերազմյան գների համեմատությամբ ԱՄՆ-ում ավելացել են երեք անգամ, Անգլիայում՝ երկու անգամ, Ֆրանսիայում՝ 20 անգամ, Իտալիայում՝ 60 անգամ: Ավելի քան 25 կապիտալիստական երկրներում անցկացված դրամի արժեքազրկումը (դևալվացիան) գների նոր ավելացում առաջ բերեց: ԱՄՆ-ի կոմպարտիայի նախագահ Ուիլյամ Ֆոստերի խոսքերով ասած՝ «ամերիկյան ժողովրդի 80 տոկոսը չի ստանում նվազագույնը այն բանի, ինչ անհրաժեշտ է նորմալ գոյություն պաշտպանելու համար»:



Ամերիկյան հանքագործներն այսպես են ասում. «Մենք սովում ենք ամեն մի դեպքում՝ և այն ժամանակ, երբ աշխատում ենք շաբաթական երեք օր և այն ժամանակ, երբ առհասարակ չենք աշխատում»:

Այդպիսին է միլիոնավոր ամերիկացիների կյանքը:

Կապիտալիստական երկրների աշխատավոր մասսաները բնակարանային զզվելի պայմաններում են ապրում: ԱՄՆ-ի բնակչության մեկ երրորդը, այսինքն մոտ 50 միլիոն մարդ, ապրում է կեղտոտ, գարշահոտ հետնաբակերում: Նույնիսկ սենատի հանձնաժողովը հարկադրված էր 1947 թվականի վերջերին ընդունել, որ ԱՄՆ-ի քաղաքներում ավելի քան 6 միլիոն բնակելի շենք, որպես բնակության համար միանգամայն ոչ պիտանի, ենթակա են քանդման: Վերջին երկու տարում ժողովրդական մասսաների բնակարանային պայմանները է՛լ ավելի վատթարացան: Ամերիկայի Միացյալ Նահանգներում ներկայումս բնակարանային ամենասուր պակասություն է տիրում ավելի, քան երկրի պատմության ընթացքում որևէ ժամանակ: Եվ այդ մի այնպիսի երկրում, որի տերիտորիայի վրա պատերազմի ժամանակ չի ընկել և ոչ մի ռումբ: Տուն չունեցող աշխատավորների ընտանիքների թիվը միայն Նյու-Յորքում հասնում է ավելի քան կես միլիոնի: Նույնպիսի դրություն է տիրում նաև կապիտալիստական մյուս քաղաքներում: Օրինակ Անգլիայի մայրաքաղաքում՝ Լոնդոնում ներկայումս կա կես միլիոն

անտում մարդ։ Վերջին չորս տարվա ընթացքում բնակարանի կարիք զգացող ընտանիքների թիվը միայն Լոնդոնում ավելացել է մոտ երկու անգամ։ Ահա թե ինչպես լեյբորիստական կառավարությունը կատարեց բանվորների բնակարանային պայմանները բարելավելու վերաբերյալ իր խոստումը։

***

Ստրկական աշխատանքը, քաղցն ու կարիքը, բնակարանային վատ պայմանները առաջ են բերում աշխատավորների առողջական վիճակի խիստ վատթարացում։ Ավելի քան 25 միլիոն ամերիկացիներ տառապում են խրոնիկական հիվանդություններով։ Տուբերկուլյոզով հիվանդների 60 տոկոսը՝ հետնաբակերի բնակիչներն են։ Կապիտալիստական երկրներում չկա ձրի բժշկական օգնություն, իսկ մասնավոր բժիշկներն ու հիվանդանոցները անմատչելի են ժողովրդական լայն մասսաների համար։ «Ամերիկյան միլիոնավոր քաղաքացիներ,— հարկադրված է խոստովանել Տրումենը,— զրկված են բժշկական սպասարկումից, որովհետև չեն կարող վարձ տալ սիստեմատիկ և բավարար բուժման համար»։

Բուրժուական պետությունների աշխատավորները չեն օգտվում վճարովի արձակուրդից, նրանք երազել անգամ չեն կարող սանատորիաներում կամ կուրորտներում հանգստանալու մասին։ Կրթությունը նույնպես անմատչելի է բանվորների և գյուղացիների համար։



ԱՄՆ-ում, օրինակ, միլիոնավոր բանվորներ ու ֆերմերներ անգրագետ են։

***

Բուրժուական պետություններում իշխանությունը գտնվում է խոշոր բանկիրների, մոնոպոլիաների ձեռքում։ ԱՄՆ-ում տեր ու տնօրեն են Ուոլլ-ստրիտի միլիարդատերերը, իսկ Անգլիայում՝ Սիտիի ֆինանսական գործատերերը։

Լենինը նշում էր, որ բուրժուական երկրներում հազար ու մի խորամանկություններով կապիտալիստները մասսաներին հեռու են պահում պետության կառավարման գործից, որ բուրժուական պառլամենտին մասնակցելու գործում հազարավոր արգելքներ են ստեղծվում աշխատավոր մասսաների համար։ Անգլիայի լորդերի պալատում (պառլամենտի վերին պալատը) կա 20 հերցոգ, 28 մարկիզ, 116 կոմս, 79 վիկոնտ, 483 բարոն, 26 արքեպիսկոպոս և եպիսկոպոս և այլն։ Եվ ո՛չ մի բանվոր։

«Խեղճին նույնքան դժվար է համայնքների պալատ (անգլիական պառլամենտի ստորին պալատ) ընկնել, որքան ուղտին՝ ասեղի ծակով անցնելը»— խոստովանում է կոնսերվատիվ գործիչ Դաֆֆ Կուպերը։ Արդյունաբերական բանվորները կազմում են ԱՄՆ-ի բոլոր ընտրողների համարյա կեսը, բայց ամերիկյան կոնգրեսում ոչ մի բանվոր չկա։

Բուրժուական երկրներում ձևականորեն հռչակվում է «խոսքի ազատություն», «մամուլի ազատություն»,

«ժողովների ազատության», իսկ փաստորեն այդ ազատություններից օգտվում են միայն կապիտալիստները և նրանց ռեակցիոն կազմակերպությունները։

ԱՄՆ-ում ապրում են ավելի քան 14 միլիոն նեգրեր։ Բայց ամերիկյան սենատում չկա ոչ մի նեգր, իսկ ներկայացուցիչների պալատում միայն երկու նեգր կա։ ԱՄՆ-ում կազմակերպվում են նեգրերի ջարդեր։ Հրկիզում են նեգրերի տները, ձեռքներն ընկած նեգրի վրա բենզին են լցնում և կրակ տալիս։

Միայն նեգրերի նկատմամբ չէ, որ կիրառվում են ապօրինություններն ու կամայականությունները. Դրանք կիրառվում են ԱՄՆ-ի բոլոր աշխատավորների նկատմամբ։ Գրող Հովարդ Ֆաստի խոսքերով ասած՝ ԱՄՆ-ը «գտնվում է սառը տեռորի և ամենադաժան ռեպրեսիաների ճնշման տակ»։ Ամերիկյան «Խարպերս մեգեզին» ժուռնալը հրապարակել է պետական ծառայողին անբասիր վարքագծի համար տրվող պատգամը՝ նա չպետք է մասնակցի ժողովների, այդ թվում նաև պարերի, այլապես նա կարող է մեղադրվել հակակառավարական հավաքույթների մասնակցելու մեջ։ Նա չպետք է կարդա գրքեր ու ժուռնալներ, նույնիսկ աշխարհագրական գրքեր։ Նա ավելի անվտանգ կարող է մնալ, եթե երդում տա, որ ինքը չգիտե, թե որտեղ է գտնվում Ռուսաստանը կամ թե ինչ է նա իրենից ներկայացնում և այլն և այլն։

Ճառաբանելով ազատության մասին, ամերիկյան



իմպերիալիստները մտցնում են նոր ռեակցիոն օրենքներ, որոնք սահմանափակում են պրոֆմիությունների իրավունքը՝ պաշտպանել բանվորների շահերը, գործադուլներ սարքել, կոլեկտիվ պայմանագրեր կնքել ձեռնարկատերերի հետ։ Այսպիսի ռեակցիոն օրենք է Տաֆտ-Խարտլիի օրենքը, որը ամերիկյան բանվորները անվանել են «ստրկության օրենք»։ Ռեակցիոներները խաչակրաց արշավանք են սկսել ԱՄՆ-ի պրոլետարիատի ավանգարդի՝ կոմունիստական պարտիայի դեմ։

Միլիոնավոր հասարակ մարդիկ ԱՄՆ-ում շարունակ սարսափով են ապրում, որ իրենց յուրաքանչյուր րոպե կարող են բռնել պահնորդական բաժնի գործակալները կամ կարող են ծեծի ենթարկվել ֆաշիստական կազմակերպությունների «կտրիճների» կողմից։

Դիտելով Ամերիկայում աշխատավորների իրավազրկությունը, Վ. Վ. Մայակովսկին գրել է.

Եթե աչքդ
թշնամուն չի տեսնում...
Եթե դու
մոռացել ես ատելը,—
Եկ այստեղ՝
Նյու-Յորք։

Աշխատավորների դրությունը կապիտալիստական երկրներում օրեց-օր ավելի է վատթարանում։ Եվ դրա

*հետ միասին, օրըստօրե աճում ու լայն չափեր է ընդունում ժողովրդական մասսաների ատելությունը իրենց ճնշողների դեմ։ Գնալով ավելի համարձակորեն ու բարձր է հնչում բողոքի ձայնը, ավելի համարձակորեն ու վճռականորեն են աշխատավորները պայքարի ելնում շահագործողների դեմ, հանուն ազատության, հանուն դեմոկրատիայի, հանուն սոցիալիզմի։*

*Ազատության ու դեմոկրատիայի համար մղվող պայքարում կապիտալիստական երկրների միլիոնավոր հասարակ մարդիկ իրենց հայացքը ուղղում են դեպի սոցիալիզմի երկիրը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը, որտեղ գործնականում բոլոր քաղաքացիների համար ապահովվել են իրավունքներ և քաղաքական ազատություններ, որտեղ տարեց-տարի աճում է ժողովրդի բարեկեցությունը, որտեղ միլիոնավոր մարդկանց ազատ և ստեղծագործական աշխատանքը ուղղված է մի մեծ նպատակի՝ կոմունիզմի կառուցմանը։*

(«Блокнот агитатора» № 7, 1950 г.).

—◆—



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՏԱԼԻՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*1. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը նոր հասարակարգի հաղթանակի համար աշխատանքի արտադրողականության բարձրացման ունեցած նշանակության մասին։*

*2. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը սոցիալիստական մրցության, որպես աշխատավորության կոմունիստական դաստիարակության կարևոր միջոցի և աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին։*

*3. Սոցիալիստական մրցությունը մասսաների գործունյա, ռևոլյուցիոն ինքնաքննադատության արտահայտությունն է, հենված միլիոնավոր աշխատավորների ստեղծագործ նախաձեռնության վրա։*

4. Ի. Վ. Ստալինը ստախանովյան շարժման, որպես սոցիալիստական մրցության նոր, ավելի բարձր էտապի մասին, նրա նշանակության և աղբյուրների մասին:

5. Մասսաների արտադրական եռանդի և ստեղծագործական նախաձեռնության ծավալումը, սովետական հասարակարգի ընդերքում եղած ռեզերվների հայտնագործումն ու օգտագործումը մասսայական սոցիալիստական մրցության խնդիրն է:

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ինչպե՞ս կազմակերպել մրցությունը: Ընտիր երկեր, *2 հատորով, հատ. 2-րդ, էջ 260: Հայպետհրատ 1948 թ.:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մեծ նախաձեռնություն: Ընտիր երկեր *2 հատորով, հատ. 2-րդ, էջ 505: Հայպետհրատ 1948 թ.:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Մրցությունը և մասսաների աշխատանքային վերելքը: *Երկեր, հատ. 12, էջ 122—126:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակցությանը: *«Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 602—617, հայ. հրատ.:*



Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ, արտասանած Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, գլուխ 6-րդ: *«Ս. Հ.» 11 մարտի 1950 թ.:*

**Советский народ — творец новой жизни.** «Правда», 9 марта 1950 г., передовая.

## II

## ՄԱՅԻՍԻ 9-Ը ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ԴԵՄ ՏԱՐԱԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՕՐՆ Է

1. Մարդկության կատաղի թշնամու՝ գերմանական ֆաշիզմի դեմ ՍՍՌՄ-ի տարած հաղթանակի համաշխարհային-պատմական նշանակությունը:

2. Սովետական Միության ուժի և հզորության աղբյուրները Հայրենական Մեծ պատերազմում:

3. Գեներալիսիմուս Ստալինը սովետական ժողովրդի հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչն է:

4. Ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում ՍՍՌՄ-ի գլխավորությամբ աշխարհի դեմոկրատական ուժերի համախմբումը, ընդդեմ պատերազմի հրձիգների:

5. ՍՍՌՄ հզորության հետագա աճումն ու ամրապնդումը, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար ժողովուրդների պայքարի հաջողության կարևորագույն պայմանն է:

*6. Հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելը մեր սոցիալիստական պետության հետագա ծաղկման գրավականն է:*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլուցիայի 26-րդ տարեդարձը: *Զետեղված Ի. Ստալին. «Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին» գրքում: Հայպետհրատ, 1946 թ. էջ 119—139:*

Ընկեր Ի. Վ. Ստալինի դիմումը ժողովրդին: *Զետեղված Ի. Ստալին. «Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին» գրքում: Հայպետհրատ, 1946 թ., էջ 206—208:*

Ընկեր Ի. Վ. Ստալինի ելույթը Կրեմլում Կարմիր Բանակի զորքերի հրամանատարների պատվին կազմակերպված ընդունելությանը, 24 մայիսի 1945 թվի: *Զետեղված Ի. Ստալին. «Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին» գրքում: Հայպետհրատ, 1946 թ., էջ 210—211:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.—Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թ. փետրվարի 9-ին: *Հայպետհրատ, 1946 թ.:*





Ընկեր Ի. Վ. Ստալինի պատասխանները ամերիկյան «Ինտերնեյշնլ նյուզ սըրվիս» գործակալության եվրոպական գլխավոր դիրեկտոր պ-ն Կինգսբերի Սմիտից 1949 թվի հունվարի 27-ին ստացված հարցերին: *«Ագիտատորի բլոկնոտ» 1949 թ. № 3, «Ս. Հ.» 1-ը փետրվարի 1949 թ.:*

Իոսիֆ Վիսսարիոնովիչ ՍՏԱԼԻՆ: Համառոտ կենսագրություն: *էջ 194—251:*

Մեր մեծ Սովետական Հայրենիքը նոր հզոր վերելքում: *«Պրավդա»-ի 1950 թ. հունվարի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի հունվարի 19-ի համարում:*

Ժողովուրդները քվեարկում են հանուն խաղաղության: *«Պրավդա»-ի 1950 թ. ապրիլի 3-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի ապրիլի 4-ի համարում:*


—○—

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԳԵՂԱՄ ՍԱՐՅԱՆ.— Հրաշալի սերունդ: *Հայպետհրատ։ 146 էջ, գինը 6 ռ.։*

ԲԱԲԱՋԱՆՅԱՆ Զ. Կ.— Ծխախոտի պարարտացումը: *32 էջ, գինը 1 ռ.։*

ԱՆ. ՎԱՐԴԱՆՅԱՆ.— Պիեսներ : Ժողովածու, *266 էջ, գինը 10 ռ.։*

---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

*ՎՖ 02961 Պատվեր № 318 Տիրաժ 9.300*

---

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան,
Երևան*